# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ





ՄԱՐՏ
5
1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



## СОДЕРЖАНИЕ

Стр.




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78:

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 5
ՄԱՐՏ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


### ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՔԻՄԻԱՑՄԱՆ ՕԳՈՒՏՆԵՐԸ

Յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի ագիտատորի անշուշտ հետաքրքրում է, թե տնտեսական ի՞նչ արդյունք է տալիս գյուղատնտեսության քիմիացումը. հանքային պարարտանյութերը, բույսերի պաշտպանության քիմիական միջոցները, անասունների անի խթանիչները ի՞նչ օգուտ կտան յուրաքանչյուր տնտեսության և մեր ամբողջ երկրին:

Այս թեմայի շուրջը զրույց անցկացնելու գործում գյուղական ագիտատորներին կօգնի ստորև հրապարակվող հոդվածը:

*Երկրի գյուղատնտեսության քիմիացումը սովետական ժողովրդի առջև ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի կողմից դրված գլխավոր խնդիրներից մեկն է: Պլենումը որոշեց առաջիկա յոթնամյակում շեշտակիորեն ավելացնել հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների և բուսաբուծության ու անասնաբուծության համար այլ քիմիական նյութերի արտադրությունը:*

*Յուրաքանչյուր ագիտատոր պետք է ընկերներին պարզաբանի, որ պարարտանյութերը բերքատվության բարձրացման հզոր միջոց են: Դաշտային պայմաններում կատարված բազմաթիվ փորձերի արդյունքները*

ցույց են տալիս, որ, օրինակ, մեկ տոննա ամոնիակա-
յին սելիտրան ցորենի բերքն ավելացնում է 3—4 տոն-
նայով, բամբակինը՝ 2, շաքարի ճակնդեղի արմատա-
պտուղներինը՝ մոտ 12, վուշի թելինը՝ մոտ 1, կարտո-
ֆիլինը՝ 18—20 տոննայով։

Կարելի է բերել նաև մի այլ համոզիչ օրինակ։ Որ-
պես հիմնական պարարտանյութ մեկ տոննա սուպեր-
ֆոսֆատ օգտագործելու դեպքում, հացահատիկի բերքն
ավելանում է 1—2 տոննայով։ Ցանքի ժամանակ ակոս-
ների մեջ փոքր քանակությամբ սուպերֆոսֆատ լցնե-
լով, լրացուցիչ ստացվում է 3—4 տոննա հացահատիկ։
Իսկ հանքային պարարտանյութերի (ազոտային, ֆոսֆո-
րային և կալիումային) մեկ տոննա խառնուրդը մի-
ջին հաշվով լրացուցիչ տալիս է մոտ 2 տոննա հացա-
հատիկ։

Կարևոր է նշել, որ 1964 և 1965 թվականներին կար-
տադրվի այնքան հանքային պարարտանյութ, որ կարելի
կլինի ապահովել բոլոր հիմնական տեխնիկական կուլ-
տուրաների ցանքերը, մի մասն էլ օգտագործել հացա-
հատիկային կուլտուրաների համախառն բերքն ավե-
լացնելու համար։

Ահա մի քանի թիվ։ 1964 թվականին հացահատիկա-
յին կուլտուրաների ցանքատարածությունները պարար-
տացնելու համար կհատկացվի 10 միլիոն, 1965 թվա-
կանին՝ 15 միլիոն տոննա, բամբակի դաշտերի համար՝
1964 թվականին 2,8 միլիոն, 1965 թվականին՝ 3,2 մի-
լիոն, շաքարի ճակնդեղի համար՝ համապատասխանա-
բար 4,6 և 4,8 միլիոն տոննա պարարտանյութ։

Առաջին հերթին որտե՞ղ կօգտագործվեն երկրա-
գործների այս «քիմիական օգնականների» միլիոնավոր
տոննաները՝ կարող են հարցնել ագիտատորին։

Պարարտանյութերը ավելի լավ ու հաստատ հա-
տուցվում են աշնանացան հացահատիկի, եգիպտացո-
րենի ու բրնձի դաշտերում։ Ուստի, բնական է, որ դրանք
առաջին հերթին կօգտագործվեն այս կուլտուրաների
համար։

Անպայման հարկավոր է ընդգծել, որ հատկապես
տնտեսական մեծ արդյունք կարելի է ստանալ աշնանա-
ցան ցորենի արտերը պարարտացնելու միջոցով։ Զգալի
տարածությունների վրա ցորենի աշնանացան է կատար-
վում շարահերկ կուլտուրաների բերքը հավաքելուց
հետո։ Ուստի այդ կուլտուրայի համար պարարտանյու-





թերի պահանջը ավելի է մեծանում։ Ահա թե ինչու
1964 թվականի բերքի աշնանացան ցորենի 17 միլիոն
հեկտար դաշտերի համար օգտագործվելու է 6,5 միլիոն
տոննա ստանդարտ պարարտանյութ (ներառյալ գարնա-
նային սնուցում)՝ միջին հաշվով մեկ հեկտարին 3, 8
ցենտներ։

Դա շա՞տ է, թե քիչ։ Ի՞նչ է տալիս մեկ ցենտներ
հանքային պարարտանյութը։

Փորձնական հիմնարկների բազմաթիվ տվյալները
այս հարցերին պատասխանում են հետևյալ թվերով։
ՌՍՖՍՌ-ի ոչ սևահողային գոտում մեկ ցենտներ հան-
քային պարարտանյութը հացահատիկի բերքն ավելաց-
նում է 1,6 ցենտներով, Հյուսիսային Կովկասում («բե-
զոստայա—1» աշնանացան ցորեն)՝ 2,1, Ուկրաինայի
արևմտյան մարզերում և Մոլդավիայում՝ 1,7 ցենտնե-
րով։ Մեկ ցենտներ պարարտանյութի հատուցումը հա-
ցահատիկով մի փոքր ցածր է ՌՍՖՍՌ-ի կենտրոնական
սևահողային գոտում, Ուկրաինայի անտառատափաս-
տանային շրջանում և Պոլեսիեում (1,3—1,2 ցենտներ
հացահատիկ)։ Բայց չի կարելի մոռանալ, որ ենթա-
դրվում է յուրաքանչյուր հեկտարին տալ ոչ թե մեկ,
այլ ավելի քան 3,8 ցենտներ պարարտանյութ։ Նշա-
նակում է, այս դեպքում բերքը կավելանա գրեթե 5
ցենտներով։

Օգտվելով այս հաշվարկից, ագիտատորները կա-
րող են հաշվել, թե այս նորմաներով հողը պարար-
տացնելու դեպքում որքան լրացուցիչ բերք կստացվի
իրենց կոլտնտեսությունում ու սովխոզում։

Աշնանացան ցորենի բերքատվության վրա լավ է
անդրադառնում ցանքի ժամանակ փոքր քանակությամբ
հանքային պարարտանյութերի օգտագործումը։ Հատ-
կապես մեծ արդյունք է տալիս գրանուլացված սուպեր-
ֆոսֆատը, որը գրեթե ամենուրեք կարելի է ակոսները
լցնել ցանքից առաջ՝ ցորենի սերմերի հետ խառնելով։

Ուկրաինայի տափաստաններում այս ձևով հեկտարին
25—75 կիլոգրամ գրանուլացված սուպերֆոսֆատ տա-
լու շնորհիվ աշնանացան ցորենի մեկ հեկտարի բերքը
միջին հաշվով ավելացել է 2,7 ցենտներով (առանց
պարարտանյութերի հեկտարից ստացվել է 22,9 ցենտ-
ներ բերք)։ Ըստ որում մեկ ցենտներ սուպերֆոսֆատը
հատուցվում է 5,4 ցենտներ հացահատիկով։

Ագիտատորների և ունկնդիրների մեջ կարող է ծագել ևս մի հարց. ե՞րբ է ավելի ձեռնտու շաղ տալ պարարտանյութերը։ Շատ արդյունավետ է, երբ վաղ գարնանը աշնանացանի հողերը սնուցվում են ազոտով։ Մեկ հեկտարին 20 կիլոգրամ ազոտ տալու դեպքում բերքը միջին հաշվով ավելանում է 3 ցենտներով։

Այսպիսով, հանքային պարարտանյութերի օգտագործումը հնարավորություն կտա արդեն 1964 թվականին աշնանացան ցորենի համախառն արտադրանքը ավելացնել 60—70 միլիոն ցենտներով։ 1965 թվականին 20,5 միլիոն հեկտար աշնանացան ցորենի համար կհատկացվի 6,5 միլիոն տոննա պարարտանյութ։ Եվ նորից այդ պարարտանյութերը առաջին հերթին կօգտագործվեն Հյուսիսային Կովկասի խոնավ շրջաններում, Ուկրաինայում, ՌՍՖՍՌ-ի ոչ սևահողային գոտում, Բելոռուսական ՍՍՌ-ում և Մերձբալթյան երկրներում։ Այդ շրջաններում, որոնք համեմատաբար ապահովված են մթնոլորտային տեղումներով, առավել արդյունավետ է լրիվ հանքային պարարտանյութերի օգտագործումը։ Այդտեղ 1965 թվականին աշնանացանի դաշտերում աշնանը և վաղ գարնանը կարելի է սնուցման համար օգտագործել միայն ազոտային պարարտանյութեր։ Դրա հաշվին աշնանացան ցորենի լրացուցիչ բերքը 1965 թվականին կկազմի 110—120 միլիոն ցենտներ։

Զրույցի ժամանակ հարկավոր է հատկապես կանգ առնել եգիպտացորենի դաշտերի պարարտացման արդյունավետության վրա։

1964 թվականին 5,6 միլիոն հեկտար հատիկացու եգիպտացորենի դաշտերի համար հատկացվում է 2,8 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, որը կօգտագործվի անտառատափաստանային շրջաններում, Պոլեսիեում, Արևմտյան Ուկրաինայում, Մոլդավական ՍՍՌ-ում, ՌՍՖՍՌ-ի կենտրոնական սևահողային մարզում, Հյուսիսային Կովկասի խոնավ շրջաններում և ոռոգվող բոլոր շրջաններում։ Այդ շրջանները առավել նպաստավոր են եգիպտացորենի մշակության համար։ Ճիշտ ագրոտեխնիկան և պարարտանյութերը այդտեղ կապահովեն հեկտարից 30—50 ցենտներ, իսկ ջրելու դեպքում՝ 60 ցենտներ և ավելի եգիպտացորենի հատիկ։

Ինչպես և առաջին դեպքում, բերենք տվյալներ, ո-



րոնք ագիտատորի կողմից կարող են օգտագործվել իր տնտեսության պայմաններին համեմատ։ (Իհարկե, հաշվի առնելով տեղաբաշխման գոտին)։

Եթե չջրվող հողերի մեկ հեկտարին տրվի 3 ցենտներ ստանդարտ պարարտանյութ, ապա եգիպտացորենի հատիկի լրացուցիչ բերքը տափաստանային շրջաններում կկազմի 4—5, անտառատափաստանային և ոչ սևահողային շրջաններում՝ մոտ 7—9 ցենտներ։ Հատուցումը ավելի բարձր կլինի ջրովի հողերում. այստեղ մեկ հեկտարի բերքը կավելանա 13—25 ցենտներով։ Դժվար չէ հաշվել, թե մեկ ցենտներ պարարտանյութը մեկ հեկտար հողատարածությունից որքան լրացուցիչ բերք կտա. չջրվող հողերում՝ մոտ 2,2, ջրվող հողերում՝ մոտ 3 ցենտներ հատիկ։

Կենտրոնական սևահողային մարզի փորձնական հիմնարկները հաստատում են, որ մեկ հեկտարին 30—45 կիլոգրամ ազոտ, ֆոսֆոր և կալիում տալու դեպքում եգիպտացորենի հատիկի բերքն ավելանում է 4,2 ցենտներով (առանց պարարտանյութերի 30,9 ցենտներ ստանալու դեպքում)։ Իսկ Ուկրաինայում 45 կիլոգրամ ազոտ, ֆոսֆոր և կալիում օգտագործելով, մեկ հեկտարից լրացուցիչ ստացել են 9,1 ցենտներ հատիկ։

Ի՞նչ եզրակացություն կարելի է անել այս տվյալներից։

Հատկացվող պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման դեպքում 1964 թվականին կարելի է լրացուցիչ ստանալ մոտավորապես 40, իսկ 1965 թվականին՝ մոտ 50 միլիոն ցենտներ եգիպտացորենի հատիկ։

«Քիմիական օգնականները» սակավ արդյունք չեն տալիս ճակնդեղի դաշտերում։ Նախատեսվում է հանքային պարարտանյութեր օգտագործել գլխավորապես ֆաբրիկային ճակնդեղագործության շրջաններում՝ հեկտարին տալով միջին հաշվով 10 ցենտներ։ 1964 թվականին շաքարի ճակնդեղի ամբողջ հողատարածության համար կպահանջվի 4,6 միլիոն տոննա պարարտանյութ։

Ինչի՞ մասին են խոսում բազմաթիվ փորձերը։

Առավել տնտեսական արդյունք է ստացվում շաքարի ճակնդեղի դաշտերում միջակ չափերով պարարտանյութեր օգտագործելու դեպքում (հեկտարին 3,7 ցենտներ ազոտային, 4,3 ցենտներ ֆոսֆորային և 2 ցենտներ կալիումային)։

Ըստ Իվանովոյի փորձակայանի տվյալների, օրինակ, մեկ հեկտարի վրա 4,4 ցենտներ պարարտանյութ օգտագործելու դեպքում, ճակնդեղի արմատապտուղների բերքն ավելանում է 52 ցենտներով, իսկ այդ նորման կրկնապատկելու դեպքում՝ 78 ցենտներով։ Համապատասխանաբար ավելանում է նաև շաքարի ստացումը. առաջին դեպքում այն կազմում է 8,7, երկրորդում՝ 14,4 ցենտներ։

Ագրոտեխնիկները կարող են հարցնել. իսկ եթե այդ նորման եռապատկե՞նք, արդյոք դա ձեռնտո՞ւ է։ Պարզվում է, որ՝ ոչ։ Շաքարի ճակնդեղի դաշտերում պարարտանյութերի հետագա ավելացումը տնտեսական ավելի քիչ արդյունք է տալիս։ Վորոնեժի մարզում 9,8 ցենտներ հանքային պարարտանյութի օգտագործմամբ լրացուցիչ ստանում են 12,6 ցենտներ արմատապտուղ, այսինքն՝ ավելի քիչ, քան Իվանովոյի փորձակայանում, ուր օգտագործվում է 8,8 ցենտներ պարարտանյութ։

Կիրգիզական ՍՍՌ-ի ջրովի հողերում մեկ հեկտարին 7,1 ցենտներ հանքային պարարտանյութ տալու դեպքում շաքարի ստացումն ավելանում է 15 ցենտներով։ Այսպիսով, շաքարի ճակնդեղի ցանքատարածությունների քիմիական պարարտացումը տալիս է զգալի տնտեսական արդյունք։ Ինչպես դեկտեմբերյան պլենումում իր զեկուցման մեջ նշեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, պարարտանյութերի օգտագործման շնորհիվ 1970 թվականին լրացուցիչ կստացվի շաքարի ճակնդեղի արմատապտուղների 33 միլիոն ցենտներ բերք կամ 4 միլիոն 300 հազար տոննա շաքար։

Հենց միայն այս հաշվարկները և տվյալները համոզում են, որ դաշտավարության քիմիացումը մեծ օգուտ է տալիս և՛ յուրաքանչյուր տնտեսության, և՛ մեր ամբողջ երկրին։ Բայց դա բոլորը չէ։ Անհրաժեշտ է զրույցի ժամանակ շոշափել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ևս մեկ էական ուղղով։ Խոսքը վերաբերում է բույսերի վնասատուների, հիվանդությունների և մոլախոտերի դեմ պայքարի քիմիական միջոցներին։

Խորհուրդ ենք տալիս բերել այսպիսի թվեր։ Ըստ բույսերի պաշտպանության համամիութենական ինստիտուտի հաշվարկների, ամեն տարի վնասատուների և հիվանդությունների պատճառով կորուստները մեզ մոտ կազմում են գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների համախառն բերքի 14—15 տոկոսը (շատ դեպքերում հասնում են 20 տոկոսի), իսկ դրամական արտահայտությամբ՝ մոտ 5—6 միլիարդ ռուբլի։ Սրանք հսկայական կորուստներ են, որոնց դեմ մղվող պայքարում քիմիացումը թույլ կտա կատարել վճռական քայլ։ Բույսերի պաշտպանության քիմիական միջոցները մինչև 1970 թվականը պետք է կազմեն 800—900 հազար տոննա։

Կաթնաանասնապահական ֆերմաների աշխատողները, ոչխարաբույծները, խոզաբույծները ագրոտեխնիկներից կարող են պահանջել հանգամանորեն պատմել, թե քիմիան ինչ կտա անասնաբուծությանը։ Մսի, կաթի, բրդի արտադրության շեշտակի ավելացման, անասունների ու թռչունների մթերատվության բարձրացման խնդիրը լուծելու մեջ, կերի կայուն բազայի ստեղծումից բացի, կարևոր նշանակություն ունի քիմիական միջոցների օգտագործումը։ Այդ միջոցները կերը հարստացնում են պրոտեինով, ամինաթթուներով, վիտամիններով, միկրոտարրերով, ինչպես նաև տալիս են կենսաբանորեն ակտիվ պրեպարատներ, որոնք խթանում են անասունների աճն ու զարգացումը։

Առավել դժվար ու սուր պրոբլեմը անասուններին անհրաժեշտ քանակությամբ մարսվող պրոտեինով ապահովելն է։ Մեր կոլտնտեսությունների և սովխոզների տրամադրության տակ եղած կերերի մեջ սպիտակուցի պարունակությունը շատ դեպքերում անհրաժեշտ նորմայի 60—70 տոկոսից չի անցնում։ Ուստի, սպիտակուցային պակասը հանգեցնում է կերի գերածախսի, իջեցնում է մթերատվությունը, դանդաղեցնում է անասունների աճը և, հետևաբար, տնտեսական վնաս է հասցնում գյուղատնտեսությանը։

Հենց այստեղ է, որ օգնության է գալիս քիմիան։ Գիտական հետազոտություններով ու պրակտիկայով հաստատված է, որ կերաբաժիններին միզանյութ, ամինաթթուներ, կերային խմորիչներ ավելացնելու դեպքում կերերի լիարժեքությունը բարձրանում է 20—30 տոկոսով, կրճատվում են արտադրանքի միավորի արտադրության վրա կատարվող ծախսումները և անասունների մթերատվությունը բարձրանում է 25—30 տոկոսով։

Լիարժեք կերակրելու համար վիտամիններ են հարկավոր։ Կերերի մեծ մասում դրանք պակասում են։

Բացի դրանից, կերի կուտակման այժմյան եղանակների պատճառով վիտամինների մեծ մասը քայքայվում է և դրանով իսկ խիստ նվազում է կերի սննդային արժեքը: Կերերի հարստացումը վիտամիններով թույլ է տալիս անասունների վերարտադրությունն ավելացնելու 10—15 տոկոսով, խիստ կրճատել մատղաշի հիվանդություններն ու կորուստները, քաշաճը ավելացնել 10—12 տոկոսով և կրճատել աշխատանքի ու միջոցների ծախսումները:

Կարևոր նշանակություն ունի անասունների սնուցումը մակրո և միկրո տարրերով: Դրանք կերաբաժիններին ավելացնելու դեպքում մթերատվությունը բարձրանում է, նյութափոխանակության խախտումներն ու հիվանդությունները կանխվում են:

Իսկ անտիբիոտիկնե՞րը: Երբ դրանցից ավելացնում ենք կերաբաժիններին, մատղաշի անկումը կրճատվում է, անասունների կենսագործունեության զանազան պրոցեսներ արագանում են և անասունների մթերատվությունը բարձրանում է: Բերե՛ք այսպիսի օրինակ: Կերին մեկ կիլոգրամ անտիբիոտիկների ավելացումը (ակտիվ նյութի հաշվով) հնարավորություն է տալիս բլոման նույն ժամանակաշրջանում, առանց նոր ծախսումների, լրացուցիչ ստանալ մեկ տոննա միս (սպանդանոցային քաշով):

Գյուղատնտեսության քիմիացման առավելագույն արդյունք ապահովելու համար անհրաժեշտ է, ինչպես նշվեց դեկտեմբերյան պլենումում, հոգ տանել լայնորեն ագրոքիմիական ուսուցում կազմակերպելու մասին: Գյուղի բոլոր աշխատավորները պետք է սովորեն ճիշտ օգտագործել հանքային պարարտանյութերը և քիմիական մյուս միջոցները: Լավ օրինակ ցույց տվեցին ստավրոպոլցիները, որոնք արշավ հայտարարեցին ագրոքիմիական գիտելիքներին տիրապետելու համար:

Ագիտատորները պետք է լինեն այդ գործի նախաձեռնողներն ու կազմակերպողները: Հարկավոր է յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում ստեղծել ագրոքիմիական ընդհանուր ուսուցման դասընթացներ: Դա գյուղատնտեսության քիմիացման արդյունավետությունը բարձրացնելու կարևոր պայմանն է:

Վ. ՏՈԼՍՏՈՒԽՈՎ

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության հանքային պարարտանյութերի բաժնի ավագ գյուղատնտես



# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին կոմունիզմի կառուցման համաժողովրդական պայքարում՝ կուլտուրական շինարարության ասպարեզում զգալի նվաճումների են հասել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները: Այդ նվաճումներն է՛լ ավելի կխորանան և կզարգանան 1964—1965 թվականներին: Դա ակնբախորեն երևում է Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարի որոշումներից:

Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIII համագումարում ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Ն. Զարոբյանի հաշվետու զեկուցման մեջ պերճախոս թվեր ու փաստեր բերվեցին մեր ռեսպուբլիկայի մշակութային կյանքի զարգացման վերաբերյալ:

Անցած երկու տարում հաջողությամբ շարունակվեց անցումը ընդհանուր պարտադիր ութամյա կրթության, ընդլայնվեց միջնակարգ դպրոցների ցանցը, բարձրացավ ուսման որակը, հետագա զարգացում ապրեցին գիշերօթիկ դպրոցները: Ներկայումս 503 հազար մարդ ընդգրկված է ուսուցման զանազան ձևերի մեջ, ռեսպուբլիկայում գործում է 1.254 դպրոց, որոնցում սովորում է ավելի քան 423 հազար աշակերտ: Ընդլայնվել է բարձրագույն և միջնակարգ կրթության ցանցը, ռեսպուբլիկայի բուհերում պատրաստվում են մի շարք նոր մասնագիտությունների կադրեր: Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 29,1 հազար մարդ, առանց արտադրությունից կտրվելու սովորում է 52,4 հազար մարդ: Միայն անցյալ տարի բուհերը պատրաստեցին 2.910 մասնագետ, իսկ տեխնիկումները և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ ավելի քան 3.496 մասնագետ: Մոտ 4000 երիտասարդ բանվորներ ավարտեցին պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության ուսումնարաններն ու դպրոցները: Անցած տարի շահագործման հանձնվեցին հանրակրթական դպրոցներ՝ 16.000 աշակերտական տեղով, մանկական նախադպրոցական հիմնարկներ՝ մոտավորապես 3000 տեղով:

1964—1965 թվականներին լրիվ կերպով կկենսագործվի ութամյա պարտադիր կրթության օրենքը։ Դպրոցների պահպանման համար 1964 թվականին կառանձնացվի 48 միլիոն ռուբլի, որը կգերազանցի 1963 թվականի հատկացումները 5,2 միլիոն ռուբլով։ 1965 թվականին հանրակրթական դպրոցներում կընդգրկվի ավելի քան 482 հազար աշակերտ, դպրոցների պահպանման համար կառանձնացվի 51,3 միլիոն ռուբլի։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում գիշերօթիկ դպրոցներ բացելու և դրանցում մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության գործին։ Ռեսպուբլիկայի 35 գիշերօթիկ դպրոցներում կընդգրկվեն 12.800 աշակերտներ, որոնց ուսուցման համար կստեղծվեն բոլոր պայմանները։ Այդ դպրոցների պահպանման համար նախատեսվում է 1964 թվականին հատկացնել 7,6 միլիոն ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 7,8 միլիոն ռուբլի։ 1964 թվականին մանկապարտեզներում և մսուրներում մանուկների թիվը կավելանա 5,7 հազարով և կկազմի 51.405 հոգի։ Այդ կոնտինգենտը խնամելու և դաստիարակելու համար 1964 թվականին հատկացվում է 14,5 միլիոն ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 15,9 միլիոն ռուբլի։ Մանկապարտեզներում և մսուրներում երեխաների թիվը 1965 թվականին կհասնի 58 հազարի։ Սովորողների թիվը հանրակրթական դպրոցներում երկու տարվա ընթացքում կաճի 72,3 հազարով և 1965—1966 ուսումնական տարում կկազմի մոտավորապես կես միլիոն մարդ։ Դա բավականաչափ կգերազանցի յոթնամյա պլանի կոնտրոլ թվերը։ Հետագա զարգացում կստանան երկարօրյա դպրոցներն ու խմբերը։ Այժմ ռեսպուբլիկայի 11 բուհերում և դրանց ֆիլիալներում սովորում է ավելի քան 29 հազար ուսանող։ Ռեսպուբլիկական բյուջեով ֆինանսավորվող 8 բուհերի պահպանման համար 1964 թվականին կծախսվի 19,9 միլիոն, իսկ 1965 թվականին՝ 21,5 միլիոն ռուբլի։

Պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության ուսումնական հաստատությունների ֆինանսավորման համար կառանձնացվի 5,4 միլիոն ռուբլի։ Այդ դպրոցների մոտ 11 հազար աշակերտներ մասնագիտական կրթություն կստանան և կաշխատեն արդյունաբերական ձեռնարկություններում ու գյուղատնտեսության ասպարեզում։

1965 թվականին ռեսպուբլիկայի բուհերում և տեխ-



նիկումներում կսովորեն 66,1 հազար ուսանողներ, 1963 թվականի 50,6 հազարի դիմաց։ Երկու տարում կպատրաստվի մոտ 6.000 մասնագետ՝ բարձրագույն կրթությամբ և 8.000-ից ավելի՝ միջնակարգ կրթությամբ։

Անցած երկու տարում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել գիտության զարգացման ասպարեզում։ Ռեսպուբլիկայի գիտնականներից շատերը իրենց ստեղծագործական աշխատանքներով մեծ օգնություն են ցույց տալիս տնտեսության և կուլտուրայի զարգացմանը։

Սովետական Հայաստանում մշակվում են աստրոֆիզիկայի, ռադիոֆիզիկայի, միջուկային ֆիզիկայի, մաթեմատիկայի, կիբեռնետիկայի, էլեկտրատեխնիկայի և գիտության մյուս ճյուղերի կարևորագույն հարցեր։ Ակադեմիկոս Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ տիեզերքի ուսումնասիրության բնագավառում կարևոր դեր է խաղում Բյուրականի աշխարհահռչակ աստղադիտարանի կոլեկտիվը։

Վերջին երկու տարում մեր գիտնականները շատ կարևոր աշխատանքներ են կատարել կայծաքարերի ուսումնասիրման, արագացուցիչների տեսության զարգացման, մեքենայական թարգմանության, քիմիայի, ագրոքիմիայի, բիոքիմիայի, էլեկտրամեխանիկայի զարգացման բնագավառներում։ Գիտական հիմնարկներում, բուհերում և մյուս կազմակերպություններում զբաղված գիտական աշխատողների թիվը 1963 թվականի վերջին կազմեց 6.506 մարդ, այդ թվում՝ 58 ակադեմիկոս, գիտությունների 208 դոկտոր և 1.718 թեկնածու։

Պարտիան և կառավարությունը տարեցտարի հսկայական միջոցներ են տրամադրում գիտության զարգացման համար։

Գիտության զարգացման ծախսերի ընդհանուր գումարը 1964 թվականին կկազմի 20,3 միլիոն ռուբլի։ Գիտությունների ակադեմիան կապիտալ շինարարության գծով այժմ 40 անգամ ավելի շատ միջոցներ է ստանում, քան 1943 թվականին։

Վերջին երեք տարում ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիան հրատարակել է հայ ժողովրդի պատմության և կուլտուրայի տարբեր հարցերին նվիրված ընդհանրացնող մի շարք կապիտալ աշխատություններ («Սովետահայ գրականության պատմություն» I հատոր,

«Հայ և ուկրաինական ժողովուրդների պատմական կապերն ու բարեկամությունը» և այլն)։

Ռեսպուբլիկայի գաղափարական և գիտական կյանքում կարևոր իրադարձություն էր «Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծերի» հրատարակումը։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված սովետահայ գրականության և արվեստի զարգացման ասպարեզում։ Մեր ռեսպուբլիկայի գրականության և արվեստի գործիչները վերջին տարիներս ստեղծեցին մի շարք գեղարվեստական գործեր, որոնք ճանաչում գտան ինչպես Հայաստանում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ ՀԿՊ XXIII համագումարում նշվեց, որ սովետահայ գրողներից շատերը ճիշտ հետևություններ անելով քննադատությունից, սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել արդիական թեմայով գրական երկերի ստեղծմանը։ Սակայն այդ հարցում ետ մնալը դեռևս ինչպես հարկն է չի հաղթահարված մեր գրողների կողմից, որ ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի, գյուղացիության կյանքն իր ամբողջ առօրյայով դեռևս իր արժանի արտացոլումը չի գտել գեղարվեստական բարձրարժեք, մնայուն ստեղծագործությունների մեջ։

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերված սովետահայ երաժշտության զարգացման գործում։ Հայաստանի կոմպոզիտորների նոր ստեղծագործությունները բարձր գնահատականի արժանացան ՍՍՌՄ կոմպոզիտորների միության համամիութենական երրորդ պլենումում և աշխատանքի ու բանվոր դասակարգի վերաբերյալ լավագույն երգի համամիութենական մրցանակաբաշխությունում։

Սակայն, կոմպոզիտորների հաջողությունները ոչ բոլոր ժանրերում են միատեսակ։ Ժողովուրդը սովետահայ կոմպոզիտորներից սպասում է ժամանակակից թեմայով օպերաներ, մասսայական երգեր և այլ ստեղծագործություններ։



Շնորհակալ աշխատանք են կատարել նաև մեր ռեսպուբլիկայի նկարիչները։ Անցած երկու տարիներին նկարիչների միությունը ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում կազմակերպել է 100-ից ավելի ցուցահանդեսներ, որոնք գերազանցապես նվիրված էին սովետական մարդու և նրա հերոսական առօրյայի պատկերմանը։

Հայաստանի նկարիչների միության կազմակերպած փոխադարձ ցուցահանդեսները ՌՍՖՍՌ-ում, Ուկրաինայում, Վրաստանում, Ադրբեջանում, Լիտվայում և այլ ռեսպուբլիկաներում խոշոր դեր խաղացին եղբայրական ռեսպուբլիկաների կերպարվեստագետների մերձեցման և համագործակցության ասպարեզում։

Սակայն, դեռևս հանդիպում ենք գաղափարական-գեղարվեստական տեսակետից անհաջող կտավների, որոնք ստվեր են գցում մեր նկարիչների կատարած դրական աշխատանքի վրա։

Այս տարի և եկող տարի մեծ զարգացում կապրեն թատրոնը, կինոն, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը. այդ նպատակների համար միայն 1964 թվականին նախատեսվում է ծախսել 5,5 միլիոն ռուբլի։

Ռեսպուբլիկայի կուլտուրայի և գիտության աշխատողները առաջիկայում վերացնելով ՀԿՊ XXIII համագումարի կողմից նշված թերությունները, իրենց արժանի լուման կներդնեն սովետական կուլտուրայի և գիտության հետագա ծաղկման ու բարգավաճման գործում։

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

(Երևանի ձեթ-օճառ կոմբինատի օճառի բաժանմունքի ագիտատոր Մ. Բաբաջանյանի զրույցը)

*Օրերս օճառի բաժանմունքի ագիտատոր, Մ. Բաբաջանյանը իր հերթական զրույցը նվիրեց այն բանին, թե բաժանմունքի և կոմբինատի կոլեկտիվը ինչպես կատարեց 1963 թվականին սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները և ինչ խնդիրներ են դրված այս տարի օճառագործների կոլեկտիվի առջև։*

*Մենք արդեն հանգամանորեն ծանոթացել ենք Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարի նյութերին,— ասում է ագիտատորը,— համագումար, որտեղ մեծ գոհունակությամբ նշվեց, թե մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ինչպիսի խոշոր հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության զարգացման գործում։ Այդ հաջողությունների մեջ իր համեստ բաժինն ունի նաև մեր կոմբինատը։ Այնուհետև ագիտատորը պատմում է, որ կոմբինատի բաժանմունքներում, ցեխերում, հերթափոխություններում ու բրիգադների միջև ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ կոմբինատը համախառն արտադրանքի 1963 թվականի պլանը կատարեց 103,6 տոկոսով, պլանից դուրս երկրին տալով 887 հազար ռուբլու արտադրանք։ Այդ նույն ժամանակ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքը գերակատարվեց 3,6 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ձեռնարկությունն ստացավ 285 հազար ռուբլու խնայողություն։*

*— 1963 թվականին լավ աշխատեցինք նաև մենք օճառագործներս,— ասում է ագիտատորը,— մեր բաժանմունքի կոլեկտիվն օճառի թողարկման պլանը կատարեց 104,9 տոկոսով, աշխատանքի արտադրողակա-*



*նության բարձրացման պլանային առաջադրանքը գե-<br>
րակատարվեց 4,5 տոկոսով, իսկ արտադրանքի ինք-<br>
նարժեքի արտապլանային իջեցումից ստացվեց 47<br>
հազար ռուբլու խնայողություն։ Կոլեկտիվը այս հաջո-<br>
ղությունների հասավ եռանդուն աշխատանքի և հատ-<br>
կապես մի շարք աշխատատար պրոցեսների մեքենա-<br>
յացման ու արտադրության մեջ նորագույն տեխնիկա-<br>
յի ներդրման շնորհիվ։*

*— Մեր աշխատողները,— շարունակում է իր զրույ-<br>
ցը ագիտատորը,— կարճ ժամանակում կարողացան<br>
յուրացնել տնտեսական օճառի արտադրության վակու-<br>
ումային մեքենայացված նոր ագրեգատի աշխատանքի<br>
տեխնոլոգիան, որը խոշոր չափով նպաստեց աշխա-<br>
տանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդ<br>
ագրեգատի գործարկմամբ փոխվեց նաև օճառի բա-<br>
ղադրությունը, բարձրացվեց արտադրանքի որակը։<br>
Բաժանմունքի կոլեկտիվն իր համերաշխ, ազնիվ աշ-<br>
խատանքով ոչ միայն կատարեց, այլև զգալի չափով<br>
գերակատարեց մրցությամբ ստանձնած պարտավորու-<br>
թյունները, որի համար արժանացավ կոմունիստական<br>
աշխատանքի բաժանմունքի պատվավոր կոչմանը։*

*Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմում է կոմբինատի մյուս բաժանմունքների, ցեխերի և հերթափոխությունների հաջողությունների մասին, որոնք բարձր ցուցանիշներով կատարել են ստանձնած պարտավորությունները։*

*Ագիտատորը ունկնդիրներին հանգամանորեն պատմում է նաև կոմբինատի և հատկապես օճառի բաժանմունքի կոլեկտիվի առջև դրված 1964 թվականի խնդիրների մասին։*

*— Մեր կոլեկտիվի պատվի գործն է,— ասում է ագիտատորը,— առաջիկա տարում օճառի արտադրության մեջ ավելի խոշոր չափերով օգտագործել սինթետիկ յուղաթթուներ, տնտեսել այդ նպատակով օգտագործվող սննդամթերքները՝ բուսական յուղը և կենդանական ճարպերը։ Այդ նպատակով մեր բաժանմունքում այս տարվա ընթացքում լուրջ բարեփոխումներ կկատարվեն, որոնք հնարավորություն կտան մեծ*

շափով կրճատել օճառի արտադրության մեջ սննդամթերքների օգտագործումը, այն փոխարինելով սինթետիկ յուղաթթուներով:

Ագիտատորը պատմում է Երևան քաղաքի քիմիական ձեռնարկությունների աշխատողների հայրենասիրական նախաձեռնության մասին, որոնք պարտավորվել են համախառն արտադրանքի 1964 թվականի պլանը կատարել 103 տոկոսով: Այդ նախաձեռնությունը ինչպես կոմբինատի բոլոր բաժանմունքներում, այնպես էլ մեր օճառագործների կողմից լայն արձագանք գտավ: Մեր կոմբինատի աշխատողները պարտավորվել են 1964 թվականի պլանը կատարել 103 տոկոսով: Նրանք պարտավորվել են նաև բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը: Ստանձնած պարտավորությունների կատարման գործում մեր բաժանմունքի աշխատողները նոր տարվա առաջին իսկ օրից պայքար են ծավալել: Իրենց լավ աշխատանքով աչքի են ընկնում ձեռքի օճառի բաժանմունքի՝ Ա. Սուքիասյանի, Ա. Հակոբյանի ղեկավարած բրիգադները, որոնք առաջադրանքները կատարում են 105 տոկոսով:

Բարձր արտադրողական աշխատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս նաև օճառի եփման բաժնի աշխատողները, որոնք միշտ գերակատարում են իրենց առաջադրանքները:

Զրույցի վերջում ագիտատորը պատասխանում է ունկնդիրների հարցերին և հույս հայտնում, որ իրենց բաժանմունքի աշխատողները պատվով կկատարեն մրցության ստանձնած պարտավորությունները, ժամկետից շուտ կկատարեն յոթնամյակի 6-րդ տարվա արտադրական պլանը:

Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երևանի ճեթ-օճառ կոմբինատի գաղափարական հանձնաժողովի անդամ





## Ի՞ՆՉ Է ՏԱԼԻՍ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

### (Թվեր և փաստեր)

Սոցիալիստական արդյունաբերության աշխատողները պատվով են կատարում պարտիայի և կառավարության առաջադրանքը գյուղատնտեսությունը քիմիական պարարտանյութերով ապահովելու և սովետական հզոր տեխնիկայով զինելու մասին: Մեր երկրի կոլտնտեսությունները և սովխոզները տարեցտարի ավելի շատ քիմիական պարարտանյութեր, տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական շատ ուրիշ մեքենաներ ու գործիքներ են ստանում: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

Եթե 1953 թվականին ՍՍՌՄ արդյունաբերությունը երկրին տվեց 7 միլիոն տոննա պարարտանյութ, ապա 1963 թվականին այն հասավ 20 միլիոն տոննայի, իսկ 1964 թվականին կհասնի 25 միլիոն տոննայի:

Եկող տարի մեր կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան 35 միլիոն տոննա պարարտանյութ, իսկ 1970 թվականին՝ 80 միլիոն տոննա:

Առաջիկա 7 տարում պարարտանյութերի արտադրության տարեկան միջին աճը պետք է կազմի գրեթե 9 միլիոն տոննա:

Մեկ տարում ՍՍՌՄ-ում կգործարկվեն քիմիական պարարտանյութերի արտադրության այնքան կարողություններ, որքան գործարկվել է սովետական իշխանության առաջին 40 տարում:

Եթե 1953 թվականին մեր երկրի գյուղատնտեսության մեջ աշխատում էր 1 միլիոն 239 հազար տրակտոր, 318 հազար հացահատիկային կոմբայն, 2,4 հազար սիլոսի կոմբայն, 4 հազար ճակնդեղի կոմբայն, 424 հազար բեռնատար ավտոմեքենա, ապա 1963 թվականին տրակտորների թիվը հասավ 2 միլիոն 600 հազարի:

Անցյալ տարի ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության մեջ աշխատում էր 533 հազար հացահատիկային կոմբայն, 198 հազար սիլոսի կոմբայն, 52 հազար ճակնդեղի կոմբայն, 900 հազար բեռնատար ավտոմեքենա և այլն:



Եթե 1953 թվականին գյուղատնտեսության մեջ օգտագործվել է 2 միլիարդ 742 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1963 թվականին այն հասել է 17 միլիարդի։

Վերջին 10 տարում գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի սպառումը աճել է ավելի քան 6 անգամ։

Միայն անցյալ տարի սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվեց 19,9 միլիոն տոննա քիմիական պարարտանյութ, 63,2 հազար տոննա բույսերի պաշտպանության և վնասատուների դեմ պայքարելու քիմիական միջոցներ։

Մեկ տարում, 1963 թվականին, արտադրվել է 325 հազար տրակտոր, (որից 238 հազարը ստացավ գյուղատնտեսությունը), 1 միլիոն 371 հազար ռուբլու մեքենաներ, 178 հազար տրակտորի գութան, 200 հազար տրակտորի շարքացան, 155 հազար տրակտորի կուլտիվատոր, 103 հազար տրակտորի հնձիչ։

Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 82,9 հազար հատ հացահատիկի կոմբայն, 29,9 հազար եգիպտացորենի, 15 հազար ճակնդեղի, 58,1 հազար սիլոսի կոմբայն։

Անցյալ տարի արդյունաբերության աշխատողները երկրին տվեցին 7,1 հազար չանաքի մեքենա, 89,7 հազար շարահնձիչ, 35 հազար թեղազտիչ և տեսակավորիչ մեքենա, 14,2 հազար հատիկազտիչ մեքենա, 49,5 հազար կթի սարք։

Մեկ տարում կոլտնտեսություններն ու սովխոզներն ստացել են (տրակտորով աշխատող) 100 հազար հնձիչ, 30 հազար փոցխ, 42 հազար ունիվերսալ բեռնիչ, 171 հազար գութան, 191 հազար շարքացան, 149 հազար կուլտիվատոր և ուրիշ շատ մեքենաներ ու սարքավորումներ։

Նույն ժամանակամիջոցում գյուղատնտեսությունն ստացել է 86 հազար բեռնատար ավտոմոբիլ, 87 հազար շարահնձիչ, 77 հազար հացահատիկի, 57 հազար սիլոսի, 26 հազար եգիպտացորենի, 15 հազար ճակնդեղի և ավելի քան 5 հազար կարտոֆիլի կոմբայն, 7 հազար չանաքի մեքենա, 50 հազար կթի հարմարանք և այլն։

Առաջիկայում ավելի մեծ աշխատանք կկատարվի մեր երկրում գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով զինելու գործում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան ավելի հզոր տրակտորներ, լայնակալ և բազմաշար մեքենաներ։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ինտենսիվացումը գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղղությունն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արտադրության ինտենսիվացումը գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղղությունն է, ճառ, արտասանած ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ»-ի 1964 թվականի փետրվարի 15-ի և 16-ի համարներում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1964 թվականի փետրվարի 15-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 16-ի համարում։

Ի. Պ. ՎՈԼՈՎՉԵՆԿՈ— Քիմիացումը գյուղատնտեսության արդյունավետությունը բարձրացնելու ճշմարիտ ուղին է, ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 11-ի համարում։

## 2. Օգտվենք գիտության նվաճումներից և առաջավորների փորձից

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հարկավոր է գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդման ակտիվ, հարձակողական ձև. ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում արտասանած ճառից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 15-ի համարում։

Մ. Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ— Գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղին, հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թվականի 3-րդ համարում։

Գ. Ս. ԴԱՎԹՅԱՆ— Ելույթ ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 14-ի համարում։

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Հողի օգտագործման օրենսգիրքն ագրոքիմիական քարտեզն է, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 3-ի համարում։

Գ. ԲԱՂՐԱՄՅԱՆ— Արմատական հարցերից մեկը, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 23-ի համարում։

Ա. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Սերմերի մշակումը սննդարար նյութերի լու-

ծույքներում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 25-ի համարում:*

### 3. Գարնանացանը սկսվում է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Գլխավոր ուղղությունը, *«Պրավդա»-ի փետրվարի 17-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 18-ի համարում:*

Գյուղական կոմունիստների առաջնահերթ պարտականությունը. *«Պրավդա» թերթի փետրվարի 24-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 25-ի համարում:*

Ն. ՎԻՐԱԲՅԱՆ— Մեծ գործին մեծ կազմակերպվածություն. *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 26-ի համարում:*

### 4. Պատվով կատարենք սոցիալիստական պարտավորությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Լենինականի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների 1964 թվականի սոցիալիստական պարտավորությունները. *տպագրված «Ս. Հ»-ի 1964 թվականի փետրվարի 9-ի համարում:*

Շահումյանի շրջանի աշխատավորության 1964 թվականի սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Սովետական Երևան» թերթի 1964 թվականի փետրվարի 25-ի համարում:*

(Տեղական փաստեր ստանձնած պարտավորությունները կատարելու մասին):

### 5. Խաղաղության պահպանումը բոլոր ժողովուրդների գործն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վերացնել Արևելյան Աֆրիկայի վրա կախված վտանգը, *ՏԱՍՍ-ի հայտարարությունը, տպագրված «Ս. Հ»-ի 1964 թվականի փետրվարի 14-ի համարում:*

Նոր ավանդ սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման գործում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 25-ի համարում:*

ՏԱՍՍ-ի հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ»-ի 1964 թվականի փետրվարի 26-ի համարում:*

---

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

Համաշխարհային պառլամենտի ասոցիացիա— *Այս ասոցիացիան իրենից ներկայացնում է համաշխարհային կառավարության ստեղծման կողմնակիցների միջազգային կազմակերպություն: Բուրժուական պացիֆիստական այս միավորումը առաջացել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո բուրժուական ինտելիգենցիայի շրջանում և լայն տարածում է գտել Արևմուտքի կապիտալիստական երկրներում:*

*Համաշխարհային պառլամենտի ասոցիացիան ստեղծվել է 1951 թվականին: Ասոցիացիայի գլխավոր օրգանը ամենամյա կոնֆերանսն է, որին հրավիրվում են մասնակցելու բոլոր երկրները: Այժմ ասոցիացիայի կազմում մտնում են ավելի քան 40 ազգային պառլամենտական կազմակերպություններ:*

*Այդ կազմակերպության անդամները գտնում են, որ աշխարհում կարգ ու կանոն և խաղաղություն կարելի է ապահովել միայն իշխանության ապազգային օրգանների՝ համաշխարհային ասամբլեայի, համաշխարհային կառավարության, համաշխարհային դատարանի ստեղծմամբ, որոնք պետք է կարգավորեն ազգերի միջև քաղաքական, տնտեսական և այլ հարաբերությունները:*

*Ըստ էության, այս ասոցիացիայի սկզբունքները իրենց էությամբ ուղղված են պետությունների ազգային ինքնուրույնության դեմ: Ահա թե ինչու համաշխարհային կառավարության ստեղծման պլանները աջակցություն են գտնում արևմտյան պետությունների, հատկապես ԱՄՆ-ի ռեակցիոն շրջաններում, որոնք ձգտում են այդ ասոցիացիան օգտագործել ԱՄՆ-ին ենթարկելու սուվերեն պետությունները և շահագործել նրանց ժողովուրդներին:*

*Այնուամենայնիվ համաշխարհային կառավարություն ստեղծելու կողմնակիցների մեծ մասը անկեղծորեն հանդես են գալիս հանուն խաղաղության պաշտպանության, ընդդեմ սպառազինությունների մրցավազքի: Նրանք հանդես են գալիս Արևելքի և Արևմուտքի խաղաղ գոյակցության օգտին:*

*Վերջին տարիներին ասոցիացիան մեծ ուշադրություն է դարձնում զինաթափման հարցերին: Ասոցիացիան մշտապես իր ներկայացուցիչներն է ուղարկում տարբեր երկրների մայրաքաղաք-*

ները, որտեղ նրանք կառավարության ղեկավարների, պառլամենտի անդամների հետ ունեցած հանդիպումների ժամանակ աշխատում են նրանց համոզել ընդհանուր և լրիվ զինաթափման անհրաժեշտությունը:

Իհարկե չի կարելի համաձայնվել այն մեթոդներին, որոնց միջոցով համաշխարհային պառլամենտի ասոցիացիայի անդամները մտադիր են հասնելու իրենց առջև դրված նպատակների իրագործմանը: Սակայն նրա վերջնական նպատակը՝ խաղաղության հաստատումը, զինաթափման իրագործումը, ժողովուրդների կենսապայմանների բարելավումը, ասոցիացիային դնում են, չնայած նրա որոշ դրույթների ռեակցիոն էությանը, այն կազմակերպությունների շարքում, որոնք հանդես են գալիս ընդդեմ պատերազմի:

**Ֆիլանտրոպիա**— *Հունարեն բառ է, որը նշանակում է մարդասիրություն, օգնել և հովանավորել կարիքավորներին: Բուրժուազիան շատ վաղուց փորձում է ֆիլանտրոպիան օգտագործել իր շահագործողական էությունը թաքցնելու համար: «Աղքատներին օգնելու» իր կեղծավորությամբ բուրժուազիան փորձում է աշխատավորներին շեղել դասակարգային պայքարից:*

1964 թվականի հունվարի 2-ին ելույթ ունենալով Հավանայում՝ Ֆիդել Կաստրոն ասել է. «Ոչ ոք աշխարհում չի մտածում, որ իմպերիալիստները ֆիլանտրոպներ են, եթե նրանք խոսում են մի քանի խղճուկ դպրոցների, հիվանդանոցների, ճանապարհների կառուցման համար տրվող միջոցների մասին: Նրանք դրա համար ուղարկում են իրենց «խաղաղության կորպուսը»՝ լրտեսության կորպուսը... Բոլոր այդ կեղծավոր քայլերը դատապարտված են ձախողման»:

**Առաջնության դափնի**— Գերազանցության, առավելության նշան: Հին հույների մոտ դափնե պսակը կամ դափնե ճյուղը եղել է բարձրագույն փառքի, հաղթանակի ու հանդիսավորության սիմվոլը: Դափնե պսակը տրվում էր պատերազմում կամ սպորտային մրցումներում հաղթողին, ինչպես նաև լավագույն երգիչներին ու պոետներին:

Դելիի քաղաքացիների անունից ողջունելով սովետական տիեզերագնացներին, հնդկական մայրաքաղաքի քաղաքագլուխն ասաց. «Տիեզերական թռիչքների նոր ժամանակաշրջանի առաջնության դափնին պատկանում է Սովետական Միությանը»:

---

## ՔԻՄԻԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

**Պոլիմերներ**—Սրանք նյութեր են, որոնք ստացվում են հազարավոր ու միլիոնավոր մոլեկուլների միակցման (պոլիմերացման) հետևանքով: Պոլիմեր՝ հունարեն բառ է, պոլի՝ նշանակում է շատ, իսկ մերոս՝ մաս: Լինում են պոլիմերային կաուչուկ, թելեր, ձյութեր և այլն: Առաջներում դրանք ստացվում էին միայն բնությունից: Այժմ քիմիկոսները սովորել են պատրաստել արհեստական պոլիմերներ, ըստ որում այնպիսիները, որոնցից բնության մեջ չկան:

**Սինթետիկ կաուչուկը** պոլիմերային էլաստիկ նյութ է, որը ներկայումս արտադրվում է շատ երկրների գործարաններում: Առաջներում կար միայն բնական կաուչուկ, որն ստացվում էր կաուչուկատու ծառերի հյութից: Որքան էլ լավը լինի բնական կաուչուկը, այն չի կարող բավարարել ժամանակակից տեխնիկայի բազմակողմանի պահանջները: Այդ է պատճառը, որ քիմիագործները ստեղծել են շատ տեսակի սինթետիկ կաուչուկներ, որոնցից յուրաքանչյուրը հատուկ պայմաններում դրսևորում է ավելի լավ հատկություններ, քան բնական կաուչուկը: Օրինակ, ՍԿԲՄ մարկայի բուտադիենային սինթետիկ կաուչուկը աչքի է ընկնում բարձր ցրտակայունությամբ: Հիանալի հատկություններ ունեն ուրետանային կաուչուկները. դրանցից պատրաստված ավտոդողերը շատ դիմացկուն են, անցնում են 2—3 անգամ ավելի տարածություն, քան մյուս կաուչուկներից պատրաստվածները:

**Ռետինը** կաուչուկի և այլ նյութերի (քիմիկատների, ծծմբի, մրի և այլն) միասեռ խառնուրդ է՝ վուլկանացված, այսինքն մինչև որոշակի ջերմաստիճան տաքացված: Առանց կաուչուկի չի կարելի ռետին ստանալ:

**Պլաստմասսաները** սինթետիկ պոլիմերային ձյութերից ստացվող նյութեր են: Առաջներում հայտնի էին միայն բնական ձյութերը՝ բիտումը և զանազան բույսերից ստացվող ձյութերը: Ներկայումս արտադրվում են տասնյակ տեսակի սինթետիկ ձյութեր և դրանց հիման վրա՝ պլաստմասսաներ:

Պլաստմասսաներից պատրաստված իրերը հիանալի են նրանով, որ շատ դեպքերում փոխարինում են գունավոր մետաղներին, պողպատին, խցանին և թանկարժեք այլ նյութերի: Օրինակ, մեկ տոննա պլաստմասսան կարող է փոխարինել մի քանի տոննա գունավոր մետաղի: Պլաստմասսաներից արդեն պատրաստում են ատամնանիվներ, առանցքակալներ, ներդիրներ, զսպանակներ, ավտոմոբիլի թափքեր, գետային նավակներ, տներ և այլն, որոնց կիրառումը տալիս է մեծ խնայողություն:

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հ. Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Մեծ պայքարի մարդիկ*, Հայպետհրատ, 481 էջ, տպաքանակ 3000, գինը 58 կոպ.:

Աշխատության մեջ տրվում է անվանավոր պարտիական ու պետական գործիչներ Սարգիս Կասյանի, Սահակ Տեր-Գաբրիելյանի, Գևորգ Աթարբեկյանի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության պատմությունը: Նրանց կյանքը լուսաբանվում է ռևոլյուցիայի և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման պատմության ընդհանուր ֆոնի վրա՝ կոնկրետ նյութի հետ առնչվող մի շարք պատմագիտական պրոբլեմների վերլուծությամբ հանդերձ:

Գիրքը նախատեսված է պատմությամբ հետաքրքրվող ընթերցողների լայն շրջանների համար:

*Մ. ԼԱՊԻՐՈՎ-ՍԿՈԲԼՈ, Էդիսոն*, Հայպետհրատ, 282 էջ, տպաքանակ 5000, գինը 63 կոպ.:

Գրքի հեղինակը (1889—1947 թթ.) սովետական նշանավոր էլեկտրատեխնիկ էր, պրոֆեսոր, տեխնիկական գիտությունների դոկտոր, վարել է ՍՍՌՄ կապի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորի, «Պրավդա» թերթի խմբագրի, սովետական մեծ հանրագիտարանի գիտության ու տեխնիկայի գծով խմբագրի պաշտոնները, ինչպես նաև եղել է ԳՈԷԼՌՈ-ի հեղինակներից մեկը: Նրա այս գիրքը նվիրված է ամերիկյան կապիտալիզմի ծաղկման շրջանի մեծագույն գյուտարարներից մեկի՝ Թոմաս Ալվա Էդիսոնի, որպես ժողովրդի ծոցից ելած ինքնուսի, կյանքին ու գյուտարարական հանճարին:

*«ՓՈԹՈՐԿԱՀՈՒՅԶ ՍԻՐՏ»* (Խոսրով Ռուզբեհը Իրանի զինվորական տրիբունալի առաջ), Հայպետհրատ, 217 էջ, տպաքանակ 1500, գինը 28 կոպ.:

«ԵՐԲ ՓԱՅԼՈՒՄ Է ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԱՍՏՂԸ», Հայպետհրատ, 133 էջ, տպաքանակ 5000, գինը 17 կոպ.:

Սույն ժողովածուն, որն իր մեջ ամփոփում է էստոնական գրողների մի շարք արձակ ու չափածո երկերը, ընթերցողներին ծանոթացնում է եղբայրական Էստոնիայի մանուկների կյանքին և գաղափար է տալիս ժամանակակից էստոնական մանկական գրականության մասին:

*«ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱ»*, Հանրամատչելի ուսումնական ձեռնարկ, Հայպետհրատ, 392 էջ, տպաքանակ 10.000, գինը 68 կոպ.:

Գիրքը հրատարակության է պատրաստվել ՍՄԿՊ Կենտկոմին կից բարձրագույն պարտիական դպրոցի և Քաղպետհրատի կողմից հայտարարված կոնկուրսին ներկայացված և մրցանակների արժանացած նյութերից:



## ԴԻՏՈՂԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԱՆԿՅՈՒՆ

(ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության զարգացումը)




ՔԻՄԻԱԿԱՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ



Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 5
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 08120 Պատվեր 190 Տիրաժ 9493

Հանձնված է արտադրության 27/II 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 5/III 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։